Հ Կ (բ) Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ՅԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ



# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 1 (79)

Հայկական ՍՍՀ ԺԿԽ-ին կից «ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
հրատարակչություն ՅԵՐԵՎԱՆ—1940 թ.

Պրոլետարներ բոլոր յերկրների, միացե՛ք

Հ Կ (Բ) Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ՅԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ



# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 1 (79)

Հայկական ԽՍՀ Ժ.Կ.Խ-ին կից «ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
Հրատարակչություն ՅԵՐԵՎԱՆ — 1940 թ.

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



# 16 ՏԱՐԻ ԱՌԱՆՑ ԼԵՆԻՆԻ-ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

1924 թվի հունվարի 21-ին հավերժ փակեց իր աչքերը Մարքս-Էնգելսի գործի շարունակող, ամբողջ աշխարհի աշխատավորության սիրելի առաջնորդ Վլադիմիր Իլյիչ Լենինը:

Լենինի անմահ գործն ու նրա կենդանի պատկերն ընդմիշտ վառ կմնա: Նրա գաղափարների վեհությունը հինը կործանելու և նորն ստեղծելու անխորտակելի կամքը, նրա խորն ատելությունը բոլոր տեսակի շահագործողների նկատմամբ ու անսահման սերը դեպի աշխատավորությունը, դեռ շատ ու շատ սերունդների հիացմունք ու վոգեվորություն է պատճառելու:

Լենինի մեծությունը կայանում է նրանում, վոր նա ամբողջ աշխարհի պրոլե-

տարիատի ձեռքը դաղափարական և կազմակերպական հզոր զենք ավեց: Նա հանդիսացավ Մարքսիզմի գրանիտե հիմքի վրա կանդնած բոլշևիկյան փառապանծ կուսակցության կազմակերպիչը: Իրեն հավատարիմ զինակից, մեծ Ստալինի հետ միասին, նա կուսակցության գլուխն անցած, մասսաներին առաջնորդեց դեպի հաղթական սոցիալիստական հեղափոխություն:

Լենինի մեծագույն արժանիքը կայանում է նրանում, վոր նա ջախջախելով 2-րդ ինտերնացիոնալի ոպորտունիզմը, վեր հանեց հեղափոխական թեորիայի նշանակությունը պրոլետարիատի կուսակցության համար, ցույց ավեց, վոր

> «Առաջավոր մարտիկի դերը կարող է կատարել միայն այն կուսակցությունը, վորը ղեկավարվում է առաջավոր թեորիայով»։

Վոր

> «Առանց հեղափոխական թեորիայի, չի կարող հեղափոխական շարժում էլ լինել»:

Սպանիչ քննադատության յենթարկելով միջազգային ոպորտունիզմի ռուսական



յերանգավորման՝ «էկոնոմիստների» հայացքները, Լենինը գրում է.

> «Հարցը դրված է միայն այսպես. բուրժուակա՞ն, թե՞ սոցիալիստական իդեոլոգիա: Այստեղ միջինը չկա... Ուստի սոցիալիստական իդեոլոգիայի ամեն մի նսեմացում, ամեն մի հեռացում նրանից՝ դրանով իսկ նշանակում է բուրժուական իդեոլոգիայի ուժեղացում» (հատ. 4, եջ 380):

Լենինը ցույց ավեց, վոր Մարքսի ուսմունքի մեջ ամենագլխավորը պրոլետարիատի դիկտատուրայի հարցն է, վորովհետեվ առանց պրոլետարիատի դիկտատուրայի անհնարին է փշրել շահագործող դասակարգի դիմադրությունը, վերացնել շահագործումը ու ստեղծել անդասակարգ հասարակություն: Զարգացնելով պրոլետարիատի դիկտատուրայի մասին Մարքսի ուսմունքը, Լենինը մշակեց պրոլետարիատի դիկտատուրայի իրականացման կոնկրետ ուղիները:

2-րդ ինտերնացիոնալի ոպորտունիստները, վորպես հեղափոխության սկզբունքային թշնամիներ, ժխտում եյին պրոլետարիատի դիկտատուրայի անհրաժեշտու-

թյունը, փորձում էյին բանվորներին համոզել, որ իրենք էլ մարքսիստներ են և ընդունում են դասակարգերի պայքարը, որ իրենք էլ կապիտալիզմին դեմ են, սակայն ցանկանում են կապիտալիզմը վերացնել ոչ թե հեղափոխությամբ, այլ պառլամենտական պայքարի միջոցով: Լենինը պատռեց բուրժուազիայի «սոցիալիստ» սպասավորների քողը և ցույց տվեց նրանց հակապրոլետարական դեմքը, ցույց տվեց, որ նրանք փաստորեն հանդիսանում են բուրժուազիայի ագենտուրան բանվոր դասակարգի շարքերում.

«Ով ընդունում է միմիայն դասակարգերի պայքարը,— գրում է Լենինը,— նա դեռ ևս մարքսիստ չէ... Սահմանափակել մարքսիզմը դասակարգերի պայքարի ուսմունքով, նշանակում է խուզել մարքսիզմը, խեղաթյուրել այն, հանգեցնել նրան այն բանին, ինչ որ ընդունելի յե բուրժուազիայի համար: Մարքսիստ է միայն նա, ով դասակարգերի պայքարի ճանաչումը ծավալում— տարածում է մինչև պրոլետարիատի դիկտատուրայի ճանաչումը: Այս է մարքսիստի



ամենախորը տարբերությունը սովորական մանր (հենց նաև խոշոր) բուրժուազիայից: Այս փորձաքարի վրա պետք է փորձարկել, մարքսիզմի իսկական հասկացողությունն ու ճանաչումը»: («Պետություն և հեղափոխություն» էջ 30, հայերեն հրատ.):

Հեղափոխական շարժման պատմության մեջ առաջին անգամ Լենինն էր, որ զարգացնելով Մարքսի և Ենգելսի գրույթները, առաջ քաշեց գյուղացիության հեղափոխական դերի հարցը, ցույց տվեց, որ պրոլետարիատի դիկտատուրայի բարձրագույն սկզբունքը՝ պրոլետարիատի և աշխատավորական խավերի դաշինքն է, բանվոր դասակարգի գլխավորությամբ: Բանվոր դասակարգն իրեն միացնելով գյուղի և քաղաքի աշխատավորությանը, նրանց պայքարի յե առաջնորդում տիրող կարգերի դեմ, ընդմիշտ ազատագրում շահագործման, խավարի ու աղքատության լծից և դուրս բերում սոցիալիզմի լայն ճանապարհի վրա:

«Պրոլետարիատի դիկտատուրան,— ասում է Լենինը,— դասակարգային դաշինքի հատուկ ձևն է,— դաշինք

թյունը, փորձում էյին բանվորներին համոզել, որ իրենք էլ մարքսիստներ են և ընդունում են դասակարգերի պայքարը, որ իրենք էլ կապիտալիզմին դեմ են, սակայն ցանկանում են կապիտալիզմը վերացնել ոչ թե հեղափոխությամբ, այլ պարլամենտական պայքարի միջոցով։ Լենինը պատռեց բուրժուազիայի «սոցիալիստ» սպասավորների քողը և ցույց տվեց նրանց հակապրոլետարական դեմքը, ցույց տվեց, որ նրանք փաստորեն հանդիսանում են բուրժուազիայի ագենտուրան բանվոր դասակարգի շարքերում.

«Ով ընդունում է միմիայն դասակարգերի պայքարը,— գրում է Լենինը,— նա դեռ ևս մարքսիստ չէ... Սահմանափակել մարքսիզմը դասակարգերի պայքարի ուսմունքով, նշանակում է խուզել մարքսիզմը, խեղաթյուրել այն, հանգեցնել նրան այն բանին, ինչ որ ընդունելի յե բուրժուազիայի համար։ Մարքսիստ է միայն նա, ով դասակարգերի պայքարի ճանաչումը ծավալում— տարածում է մինչև պրոլետարիատի դիկտատուրայի ճանաչումը։ Այս է մարքսիստի



ամենախորը տարբերությունը սովորական մանր (հենց նաև խոշոր) բուրժուազիայից։ Այս փորձաքարի վրա պետք է փորձարկել, մարքսիզմի իսկական հասկացողությունն ու ճանաչումը»։ («Պետություն և հեղափոխություն» էջ՝ 30, հայերեն հրատ.)։

Հեղափոխական շարժման պատմության մեջ առաջին անգամ Լենինն էր, որ զարգացնելով Մարքսի և Էնգելսի դրույթները, առաջ քաշեց գյուղացիության հեղափոխական դերի հարցը, ցույց տվեց, որ պրոլետարիատի դիկտատուրայի բարձրագույն սկզբունքը՝ պրոլետարիատի և աշխատավորական խավերի դաշինքն է, բանվոր դասակարգի ղեկավարությամբ։ Բանվոր դասակարգն իրեն միացնելով գյուղի և քաղաքի աշխատավորությանը, նրանց պայքարի յե առաջնորդում տիրող կարգերի դեմ, ընդմիշտ ազատագրում շահագործման, խավարի ու աղքատության լծից և դուրս բերում սոցիալիզմի լայն ճանապարհի վրա։

«Պրոլետարիատի դիկտատուրան,— ասում է Լենինը,— դասակարգային դաշինքի հատուկ ձևն է,— դաշինք

աշխատավորների ավանգարդ՝ պրոլետարիատի և աշխատավորների բազմաթիվ ոչ-պրոլետարական խավերի (մանր բուրժուազիա, մանր տնտեսատերեր, գյուղացիություն, ինտելիգենցիա և այլն) կամ նրանց մեծամասնության միջև, դաշինք կապիտալիզմի դեմ, դաշինք, որի նպատակն է կապիտալի լիակատար տապալումը, բուրժուազիայի դիմադրության և նրա կողմից ձեռնարկվող ռեստավրացիայի փորձերի լիակատար ճնշումը, դաշինք, որի նպատակն է սոցիալիզմի վերջնական ստեղծումն ու ամրապնդումը» (հատոր 24, էջ՝ 311)։

19-րդ դարի մարքսիստների մեջ տիրում էր այն համոզմունքը, թե կապիտալիզմից սոցիալիզմի անցնելու քաղաքական ձևը հանդիսանալու յե պարլամենտական հանրապետությունը։ Հանճարեղ Լենինը վերլուծելով Փարիզի կոմունայի և 1905 թվի ռուսական առաջին հեղափոխության դասերը, Խորհուրդները հայտնաբերեց որպես պրոլետարիատի դիկտատուրայի պետական ձև, և ցույց տվեց, որ իշխանության միայն խորհրդային ձևն է, որ հանդի-



սանում է ֆակական դեմոկրատիայի իրականացումը և արտահայտում հասարակության ամենալայն խավերի շահերը, որովհետև նա «հարմարեցված է ոչ թե աշխատավոր մասսաների շահագործման ու ճնշման խնդիրներին, այլ ամեն տեսակ ճնշումից ու շահագործումից նրանց լիովին ազատագրելու խնդիրներին պրոլետարիատի դիկտատուրայի խնդիրներին» (ՍՏԱԼԻՆ)։

Առաջ մղելով Մարքսիզմը, յելնելով անընդհատ հեղափոխության մարքսյան դրույթից, Լենինը կերտեց բուրժուա-դեմոկրատական հեղափոխության՝ սոցիալիստականի վերաճման հոյակապ ուսմունքը։ Դեռ 1905 թվի հեղափոխության նախօրյակին, Լենինը մշակելով վերաճման թեորիան նշեց՝

«Դեմոկրատական հեղափոխությունից մենք իսկույն յեվեթ կսկսենք անցնել — և հենց մեր ուժի, գիտակից ու կազմակերպված պրոլետարիատի ուժի չափով — կսկսենք անցնել սոցիալիստական հեղափոխության։ Մենք կողմնակից ենք անընդհատ հեղափո-

խության: Մենք կիսաճամբին կանգ չենք առնի....

Ավանտյուրիզմի մեջ չընկնելով, մեր գլխավոր խնդրին չդավաճանելով, եժանագին ժողովրդականության հետևից չվազելով, մենք կարող ենք ասել և ասում ենք միայն մի բան. մենք բոլոր ուժերով կօգնենք ամբողջ գյուղացիությանը դեմոկրատական հեղափոխություն կատարելու, որպեսզի էլ ավելի հեշտ լինի մեզ համար, որքան կարելի յե շուտով անցնել նոր և ավելի բարձր խնդրի՝ սոցիալիստական հեղափոխության» (Հատոր 8, էջ 186—187):

Լենինի խոշորագույն ավանդն է հանդիսանում մարքսիզմի գանձարանի մեջ մի յերկրում սոցիալիզմի հաղթանակի հնարավորության ուսմունքը: Խորապես ուսումնասիրելով 20-րդ դարի տնտեսական և քաղաքական նոր յերևույթները, Լենինը տվեց իմպերիալիզմի մասին ուսմունքը. նա ցույց տվեց, որ իմպերիալիզմի եպոխայում, կապիտալիզմի բոլոր հակասությունները իրենց սրման գագաթնակետին են հասնում և անխուսափելի դարձնում



կապիտալիզմի կործանումն ու պրոլետարական հեղափոխությունները: Սակայն միաժամանակ Լենինը սովորեցնում էր, որ կապիտալիզմն ինքնին չի խորտակվում, որ նրան խորտակում է կազմակերպված պրոլետարիատը գյուղի և քաղաքի աշխատավորության հետ միասին՝ հեղափոխական (կոմունիստական) կուսակցության ղեկավարությամբ: Կերտելով իմպերիալիզմի մասին ուսմունքը, Լենինը միաժամանակ ընդգծում էր.

«Կապիտալիզմի զարգացումը տարբեր յերկրներում կատարվում է ծայր աստիճանի անհամաչափ: Այլ կերպ չի յել կարող լինել ապրանքային արտադրության պայմաններում: Այստեղից բխում է անխախտ յեզրակացություն՝ սոցիալիզմը չի կարող հաղթել բոլոր յերկրներում միաժամանակ: Նա կհաղթի սկզբում մեկ կամ մի քանի յերկրներում, իսկ մնացածները որոշ ժամանակվա ընթացքում կմնան բուրժուական կամ մինչբուրժուական»: (Հատ. 19. էջ 325):

Մարքսի և Ենգելսի գործունեության ժամանակաշրջանում, այսինքն՝ մինչիմ-

պերիալիստական կապիտալիզմի շրջանում մարքսիստները գտնում էին, որ սոցիալիզմը մեկ առանձին վերցրած երկրում չի կարող հաղթանակել, որ նա կհաղթանակի կապիտալիստական մի շարք երկրներում միաժամանակյա հեղափոխության շնորհիվ: Այս դրույթը ճիշտ էր այն ժամանակվա համար, երբ դեռ կապիտալիզմը վեր էր բարձրանում և ոչ թե դեպի կործանում գնում, երբ կապիտալիզմի հակասությունները համեմատաբար թույլ էին արտահայտվում, երբ կապիտալիստական առաջավոր երկրները, մոտավորապես, համաչափ էին զարգանում:

Սակայն դրությունն արմատապես փոխվեց իմպերիալիզմի եպոխայում, երբ զարգացող կապիտալիզմը վերածվեց մեռնող կապիտալիզմի, երբ կապիտալիզմի թռիչքաձև զարգացման շնորհիվ առանձին երկրներում հասունանում են սոցիալիստական հեղափոխության նախադրյալները, մինչդեռ դրա կողքին, մյուս երկրներում դեռ այդ նախադրյալները հասունացած չեն: Եվ Լենինի մեծագույն արժանիքն այն էր, որ նա զարգացնելով Մարքսիզմը, վճռաբար դեն շպրտեց կյան-



քի կողմից արդեն մերժված հին դրույթները և ավելց նոր իրադրությանը համապատասխանող՝ նոր դրույթներ․

«Ինչ կլիներ կուսակցության, մեր հեղափոխության, մարքսիզմի վիճակը,— եթե Լենինը տեղի տար մարքսիզմի տառի առջև, եթե նա թեորիական արիություն չունենար մի կողմ նետելու մարքսիզմի հին եզրակացություններից մեկը, փոխարինելով այն մի նոր եզրակացությամբ՝ մեկ, առանձին վերցրած երկրում, սոցիալիզմի հաղթանակի հնարավորության վերաբերյալ եզրակացությամբ, որը համապատասխանում էր պատմական նոր իրադրությանը: Կուսակցությունը կխարխափեր մթության մեջ, պրոլետարական հեղափոխությունը կզրկվեր ղեկավարությունից, մարքսիստական թեորիան կսկսեր նեխվել: Պրոլետարիատը տանուլ կտար, պրոլետարիատի թշնամիները կշահեին» (ՀամԿ(բ)Կ պատմություն, էջ 480):

Լենինիզմը— իմպերիալիզմի և պրոլետարական հեղափոխության դարաշրջանի

մարքսիզմը— աճեց ու ամրապնդվեց 2-րդ ինտերնացիոնալի օպորտունիզմի դեմ մղված անհաշտ պայքարում, նա աճեց ու ամրապնդվեց տրոցկիստական և ամեն տեսակ հակահեղափոխական իդեոլոգիաների դեմ մղված անհաշտ պայքարում: Լենինիզմը աշխարհի մեկ վեցերորդական մասի ժողովուրդներին ազատություն ու երջանկություն բերեց, նա հանդիսանում է երկրագնդի ամբողջ աշխատավոր մարդկության ազատարար դրոշը:

## ԸՆԿԵՐ ՍՏԱԼԻՆԻ ԳԼԽԱՎՈՐՈՒԹՅԱՄԲ՝ ԼԵՆԻՆՅԱՆ ԴՐՈՇՈՎ

Լենինի մահից հետո, ընկեր Ստալինը ի լուր ամբողջ աշխարհին, կուսակցության անունից երդվեց լիովին կենսագործել Լենինի պատգամները.

Բարձր պահել և մաքուր պահպանել կուսակցության անդամի մեծ կոչումը:

Աչքի լույսի պես պահպանել մեր կուսակցության միասնությունը:

Պահպանել ու ամրապնդել պրոլետարիատի դիկտատուրան:

Բոլոր ուժերով ամրապնդել բանվորների և գյուղացիների դաշինքը:



Ամրապնդել ու ընդլայնել Հանրապետությունների Միությունը:

Ամրապնդել և ուժեղացնել Կարմիր բանակը, Կարմիր նավատորմը:

Ամրապնդել ու ընդլայնել ամբողջ աշխարհի աշխատավորների միությունը— Կոմունիստական Ինտերնացիոնալը:

Լենինի մահից հետո անցած 16 տարիների ընթացքում, ընկեր Ստալինը վեր բարձրացրեց Մարքսի-Էնգելսի-Լենինի դրոշը, իր շուրջը համախմբեց բոլշևիկյան կուսակցությունը, ամբողջ խորհրդային ժողովրդին և լիովին կատարեց իր տված երդումը:

1890-ական թվականների վերջերից ըսկսած, ընկեր Ստալինը Լենինի հետ միասին կառուցում էր բոլշևիկյան կուսակցությունը, մշակում էր բանվորական կուսակցության հեղափոխական թեորիայի և հեղափոխական պրակտիկայի հարցերը:

Ստալինը Լենինի հետ միասին էր ղեկավարում բոլշևիկների կուսակցությունը և պրոլետարիատի հեղափոխական պայքարը: Ստալինը Լենինի հետ միասին էր կազմակերպում կապիտալիստական կարգերի խորտակումը: Նա Լենինի հետ միասին էր

կառուցում աշխարհում առաջին սոցիալիստական խորհրդային պետությունն ու այն պաշտպանում բազմաթիվ թշնամիներից: Ստալինը Լենինի հետ միասին եր ստեղծում Կոմունիստական Ինտերնացիոնալը: Ստալինն ամենայն կրքոտությամբ պաշտպանեց, ու սոցիալիզմի դարաշրջանի նոր պայմանների համաձայն զարգացրեց Մարքսիզմ-Լենինիզմը: Ստալինը պաշտպանեց կուսակցության լենինյան-ստալինյան միասնությունը տրոցկիստական-բուխարինական մատնիչներից: Ստալինը յերկիրը հասցրեց սոցիալիզմին:

«Սոցիալիզմի բոլոր հաջողությունների մեջ, բոլոր հաղթանակների մեջ, մենք տեսնում ենք լենինիզմի ամենահաղթ ուժը: Մենք հաղթանակել ենք հավատարիմ մնալով լենինիզմին: Այդ սովորեցրել է և սովորեցնում է ընկեր Ստալինը»: (ՄՈԼՈՏՈՎ)

Սոցիալիզմի մեծ հաղթանակները մեր յերկրում հանդիսանում են Լենինյան ուսմունքի հաղթանակը՝ բոլշևիկյան կուսակցության, լենինյան-ստալինյան ղեկավար գծի հաղթանակը:



Յերբ մեր յերկրի տնտեսությունը բուժեց իմպերիալիստական պատերազմի և քաղաքացիական կռիվների ընթացքում իր ստացած վերքերը, ընկեր Ստալինը յելնելով Լենինի այն դրույթից, թե՝

«Սոցիալիզմի միակ նյութական հիմքը կարող է լինել մեքենայական խոշոր արդյունաբերությունը, վորն ընդունակ է վերակառուցել նաև հողագործությունը» (հատ. 20, եջ՝ 434), հանճարեղ ձեռքով յերկիրն ուղղեց սոցիալիզմի անմիջական կառուցման ռելսերի վրա: Ստալինի ցուցումներով ու մասնակցությամբ մշակվեց յերկրի ինդուստրացման հնգամյա պլանը, վորի կատարումը 4 տարվա ընթացքում, պայմաններ ստեղծեցին ընդունելու յերկրորդ և յերրորդ հնգամյակների ավելի հոյակապ ստալինյան պլանները: Դեռ 1925 թվին, կուսակցության 14-րդ համագումարում ընկեր Ստալինը տվեց սոցիալիստական ինդուստրացման ծավալուն ծրագիրը, վորի դեմ պայքարի դուրս յեկան սոցիալիզմի յերդվյալ թշնամիներ՝ տրոցկիստները, զինովյեվականները, բուխարինականները: Նրանք սոցիալիզմի կառուցման ստալինյան պլանին հա-

կառուցելու ՍՍՀՄ-ում կապիտալիզմի վերականգնման պլանը։

Կուսակցությունը կուռ կերպով համախմբված իր առաջնորդի շուրջը, ջախջախեց ու դեն նետեց կապիտալիզմի ռեստավրատորներին, իրենց անարգ ծրագրերի հետ միասին։

Պատմական տեսակետից, չտեսնված կարճ ժամանակաշրջանում՝ 10—15 տարում մեր երկրում բոլորովին նոր ստեղծվեց մեքենայական խոշոր արդյունաբերություն, հիմնված համաշխարհային տեխնիկայի վերջին նվաճումների վրա։ Կառուցվեցին մեքենաշինական, մետալուրգիական, ավտոմոբիլային, տրակտորային, քիմիական, օդանավերի կառուցման, նավաշինական, էլեկտրոսարքավորումների և բազմաթիվ ուրիշ նոր արտադրական ձեռնարկություններ։ Դրա հետևանքով մեր երկրի պաշտպանությունը, պանծալի Կարմիր բանակը, լայն բազա ստացավ և աշխարհում դարձավ ամենահզոր բանակը։

Երկրի ինդուստրացման ստալինյան պլանի հաղթանակը, բոլոր հնարավորությունները ստեղծեց ցաք ու ցրիվ, մանր ու աղքատիկ գյուղացիական տնտեսությունները



համախմբել կոլեկտիվ տնտեսություններում, համատարած կոլեկտիվացման հիման վրա, կուլակությունը որպես դասակարգի լիկվիդացիայի ենթարկել։ Հենվելով Լենինի ցուցումների վրա, ընկեր Ստալինը կուսակցության 15-րդ համագումարում տվեց գյուղի կոլեկտիվացման ծավալուն ծրագիրը, ընդգծելով, որ երկիրը հետամնացությունից սոցիալիզմի ճանապարհ դուրս բերելու միակ ելքը

«...Մանր ու բաժան-բաժան գյուղացիական տնտեսությունները հողի հանրային մշակման հիման վրա, խոշոր ու միավորված տնտեսություններին անցնելու մեջ է, նոր, բարձրագույն տեխնիկայի բազայի վրա՝ հողի կոլեկտիվ մշակման անցնելու մեջ է։ Ելքն այն բանի մեջ է, որ մանր և մանրագույն գյուղացիական տնտեսություններն աստիճանաբար, բայց անշեղորեն, ոչ թե ճնշման կարգով, այլ ցույց տալու և համոզելու կարգով, միավորվեն խոշոր տնտեսությունների մեջ՝ հողի հանրային, ընկերավարական, կոլեկտիվ մշակման հիման վրա, գյուղատնտեսական մեքենաների ու տրակտորների կի-

բառումով, հողագործության ինտենսիֆիկացիայի գիտական պրոբլեմների կիրառումով: Այլ ելք չկա»:

Ընկեր Ստալինի անմիջական ղեկավարությամբ աշխատավոր գյուղացիությունը — հատկապես նրա ամենաբազմամարդ խավը՝ միջակը, 1929 թվին վճռական շրջադարձ կատարեց դեպի կոլեկտիվ տնտեսությունը: Գյուղացիության այդ պատմական շրջադարձը, մեկ հարվածով լուծեց սոցիալիստական շինարարության յերեք արմատական հարցերը. լիկվիդացիայի յենթարկեց մեր յերկրում ամենաբազմամարդ շահագործողական դասակարգը՝ կուլակությունը, կապիտալիզմի ռեստավրացիայի պատվարը. մեր յերկրում ամենաբազմամարդ աշխատավոր դասակարգը՝ գյուղացիների դասակարգն անցավ հանրային, կոլտնտեսային սոցիալիստական տնտեսության ուղու վրա: Խորհրդային իշխանությունը սոցիալիստական բազա ստացավ ժողովրդական տնտեսության ամենաընդարձակ ու կենսականորեն անհրաժեշտ բնագավառում — գյուղատնտեսության մեջ: Դրանով իսկ մեր յերկրում վոչնչացվեցին կապիտալիզմի վերականգնման վերջին աղ-



բյուրները և ստեղծվեցին սոցիալիստական ժողովրդական տնտեսություն ստեղծելու անհրաժեշտ, վճռական պայմաններ:

«Այդ ամենախոր հեղափոխական հեղաշրջում եր, մի թռիչք հասարակության հին վորակական կացությունից դեպի նոր վորակական կացությունը, մի հեղաշրջում, վորն իր հետևանքներով 1917 թվականի հոկտեմբերի հեղաշրջմանը հավասար նշանակություն ուներ» («ՀամԿ(բ)Կ պատմություն». եջ 411):

Իբրև արդյունք այն հսկայական ջանքերի, վոր կատարել է բոլշևիկյան կուսակցությունն ընկեր Ստալինի գլխավորությամբ, կոլտնտեսային սիստեմը տիրապետող դարձավ, նրանց շնորհիվ վոչնչացավ աղքատությունը, լիկվիդացիայի յենթարկվեց չքավոր, կովագուրկ, ձիագուրկ տնտեսությունների կատեգորիաները: Գյուղի տնտեսական, կուլտուրական վերելքի, ունևոր կյանքի նախադրյալը հանդիսացավ Ստալինյան հնգամյակների ընթացքում ստեղծված հզոր արդյունաբերությունը, վորը կոլտնտեսային դաշտերին տվել է ավելի քան 500 հազար տրակտոր, մոտ 200

հազար կոմբայններ, նույնքան ավտոմեքենաներ, հարյուր հազարավոր տրակտորային գութաններ, կալսիչներ, սերմնացաններ և գյուղատնտեսական այլ գործիքներ ու մեքենաներ, վորոնք ստալինյան հնգամյակների մարդկանց ձեռքին հրաշքներ են գործում:

ՍՍՀՄ-ի աշխատավորության ջանքերի մեծագույն լարումով, հանճարեղ Ստալինի ղեկավարությամբ, սոցիալիզմի կառուցման խնդիրները հաջողությամբ լուծվեցին: Այժըմ այլ է դարձել մեր յերկրի եկոնոմիկան և հասարակական հարաբերությունները: Սոցիալիստական սեփականությունը կազմում է խորհրդային Միության հիմքը, ընդմիշտ վերացված են մեր յերկրում շահագործող դասակարգերն ու դրա հետ միասին՝ մարդու շահագործումը մարդու կողմից: Կորչում ու ջնջվում են բանվորների, գյուղացիների և ինտելիգենցիայի միջեվ յեղած տնտեսական ու քաղաքական հակասությունները, ստեղծվել է խորհըրդային հասարակության բարոյական-քաղաքական միասնության հիմքը:

Ընկեր Ստալինի ղեկավարությամբ ձեռք բերած հաղթանակների շնորհիվ, յերկրին



ընդունեց Ստալինյան վոսկեհատ Սահմանադրությունը, վորը հանդիսանում է դեմոկրատիայի բարձրագույն տիպը՝ սոցիալիստական դեմոկրատիզմի մարմնացումը: Ստալինյան Սահմանադրության կիրառումըն անսահմանափակ հնարավորություններ բացեց՝ պետական ղեկավարման մեջ, խորհրդային ժողովրդի ամենալայն մասնակցության՝ մասսաների ակտիվության աճման համար, գործունեյության բոլոր բնագավառներում ընդունակությունների և տաղանդների զարգացման ու ծաղկման համար: Ստալինյան Սահմանադրությամբ խորհրդային ժողովրդի համար ապահովված է աշխատանքի, հանգստի, ձրի բուժման և ուսուցման իրավունքը՝ յերջանիկ կյանք վայելելու իրավունքը:

***

Մարքսի-Էնգելսի-Լենինի գործի հանճարեղ շարունակող Ստալինն իր տեսական ու գործնական վիթխարի աշխատանքով խոշորագույն ավանդ է մտցրել Մարքսիզմ-Լենինիզմի գանձարանի մեջ: Ինչպես Լենինն առաջ մղեց մարքսիզմը՝ նրա հիմնական հարցերի բոլոր ուղղություններով, այնպես էլ ընկեր Ստալինն է առաջ մղում մարքսիզմ-լենինիզմը:

Զարգացնելով բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի ուսմունքը, ընկեր Ստալինը բացահայտեց այդ յերկու դասակարգերի զարգացման նոր ձևերը, լրացնելով գյուղի և քաղաքի առևտրական զոդման լոզունգը՝ արտադրական զոդման լոզունգով: Այս լոզունգի հիման վրա ամրապնդվեց յերկու դասակարգերի դաշինքը, հզորացավ խորհրդային իշխանության հենարանը:

Լենինի ուսմունքը պրոլետարական դեմոկրատիայի մասին, ընկեր Ստալինն ավելի զարգացրեց և տվեց սոցիալիստական, հետևողական դեմոկրատիզմի իդեան, վորը վորպես որենք գրի յե առնված Ստալինյան Սահմանադրության մեջ:

Հսկայական չափով առաջ մղեց ընկեր Ստալինը Մարքսիզմ—Լենինիզմի ուսմունքը պրոլետարական պետության մասին, տվեց կապիտալիստական շրջապատի պայմաններում սոցիալիստական պետության դերի ու ֆունկցիաների նոր ձևակերպումը: Ընկեր Ստալինն առաջադրելով սոցիալիստական պետության զարգացման յերկու ժամանակաշրջանների մասին ուսմունքը, սովորեցնում է մեզ. քանի դեռ գոյություն



ունի կապիտալիստական շրջապատումը, քանի վոր յերկրագնդի միայն մեկ վեցերորդական մասն է սոցիալիստական, իսկ մնացածը դեռ կապիտալիստական է, այդ կապիտալիստական յերկրներն աշխատում են և կաշխատեն մեզ վոչնչացնել, դրա համար ել անհրաժեշտ է վոչ թե մեր պետության թուլացում, այլ ավելի ամրապնդում: Ճիշտ է, սոցիալիզմի հաղթության շնորհիվ, շահագործող դասակարգերին ճնշելու պետության ֆունկցիան վերացել է, բայց դրա փոխարեն ուժեղացել է և ավելի պետք է ուժեղանա սոցիալիստական բարիքը հափշտակողներից պաշտպանելու, սոցիալիստական պետության ռազմական պաշտպանության ֆունկցիաները, պահպանվել և զարգանում է պետական որգանների տնտեսական— կազմակերպական, կուլտուր-կրթական ֆունկցիաները:

«...Մենք այժմ ունենք միանգամայն նոր, սոցիալիստական պետություն, վորը դեռևս տեսնված չե պատմության մեջ և վորն իր ձևով ու ֆունկցիաներով զգալիորեն տարբերվում է առաջին ֆազի սոցիալիստական պետություններից» (ՍՏԱԼԻՆ):

Եթե Մարքսի-Էնգելսի և Լենինի ժամանակաշրջանում գիտական կոմունիզմի հարցերը մշակված էին ընդհանուր գծերով, ապա ընկեր Ստալինն այն ավելի կոնկրետ մշակեց, նշեց սոցիալիզմի իրականացման ուղին, մշակեց սոցիալիզմի հաղթանակի ներքին հնարավորությունների և արտաքին պայմանների մասին ուսմունքը, առաջադրեց սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու մանրամասն ծրագիրը: Այդ հարցերի մշակումը հսկայական նշանակություն ունեցավ սոցիալիստական կարգերի հաղթանակների համար:

Սոցիալիզմի յերկրի կատաղի թշնամիները, իմպերիալիզմի վարձկան շներ տրոցկիստները, բուխարինականները և մյուսները, բազմիցս փորձեր կատարեցին խանգարելու խորհրդային ժողովրդի հաղթարշավը: Սակայն ընկեր Ստալինն իր շուրջը համախմբելով բոլշևիկյան կուսակցությունը, ջարդուփշուր արավ բոլոր թշնամիներին, սրբությամբ պաշտպանեց լենինյան սկզբունքները և ապահովեց լենինիզմի լիակատար հաղթանակը:

Շարունակելով կուսակցության մասին լենինյան սկզբունքների զարգացումն, ընկեր Ստալինը կռեց մեր կուսակցության պողպատյա միասնությունը և նրան դարձրեց վերին աստիճանի մարտունակ: Այս բանն առաջին հերթին ձեռք բերվեց նրանով, վոր ընկեր Ստալինն անդադար զինում է կուսակցությունը լենինիզմով, սովորեցնում է սոցիալիզմի շինարարության օրենքները, սովորեցնում է պայքարելու և հաղթանակելու ստալինյան արվեստը:

Ընկեր Ստալինն առաջ քաշեց կադրերի աճեցման, նրանց նկատմամբ հոգատար վերաբերմունքի, նրանց տեխնիկայով զինելու և ճիշտ օգտագործելու խնդիրները: Առաջ քաշեց մասսաների հետ սերտ կապ պահպանելու՝ նրանց սովորեցնելու և նրանցից սովորելու կարևորագույն հարցերը:

«Կարելի յե վորպես կանոն ընդունել, — ասում է ընկեր Ստալինը, — վոր քանի բոլշևիկները կապ են պահպանում ժողովրդի լայն մասսաների հետ, նրանք անպարտելի կլինեն: Եվ ընդհակառակը, բավական է միայն, վոր բոլշևիկները կտրվեն մասսաներից և կորցնեն նրանց հետ ունեցած կապը,

բավական է միայն, վոր նրանք ծածկվեն բյուրոկրատական ժանգով, վորպեսզի նրանք զրկվեն ամեն ուժից և դատարկ բանի վերածվեն»:

Յեվ Լենինյան-Ստալինյան կուսակցությունը հաղթահարեց բոլոր տեսակի դժվարությունները ու համաշխարհային պատմական նվաճումներ ձեռք բերեց միայն այն բանի հետևանքով, վոր նա կատարեց իր առաջնորդի այդ ցուցումները:

Խորհրդային Միությունը շրջապատված է կապիտալիստական յերկրներով, վորոնք հարմար առիթի յեն սպասում հոշոտելու կապիտալիստների համար ատելի սոցիալիստական հայրենիքը: Մարքսիզմ-Լենինիզմի հանճարեղ ստրատեգ ընկեր Ստալինը ճիշտ կերպով հաշվի առավ միջազգային բարդ իրադրությունը, մեծագույն ջանքերով հզորացրեց պանծալի Կարմիր բանակը, վորի ոգնությամբ ձեռք մեկնեց Արևմտյան Բելոռուսիայի, Արևմտյան Ուկրաինայի և Ֆիննական աշխատավորությանը: Վարպետորեն ոգտագործելով կապիտալիստական աշխարհի ներքին հակասությունները, ծավալվող յերկրորդ իմպերիալիստական պատերազմի պայմաններում



խաղաղություն ապահովեց Խորհրդային ժողովուրդների համար, անմատչելի դարձրեց մեր սահմանները թշնամիների համար:

Սակայն մեր յերկրի առջև կանգնած 3-րդ հնգամյակի հսկայական խնդիրների կատարումը մեզանից պահանջում է ուժերի հսկայական լարում: Անհրաժեշտ է պայքարել աշխատանքային կարգապահությունը բարձրացնելու, խորհրդային ամբողջ ժողովրդին մոբիլիզացիայի յենթարկելու, ստախանովյան շարժման ծավալումով՝ 1940 թվի պլանները լրիվ կատարելու համար:

Անհրաժեշտ է միշտ հիշել կապիտալիստական շրջապատման փաստը, չմոռանալ, վոր իմպերիալիստները Անգլիայի և Ֆրանսիայի բուրժուազիայի գլխավորությամբ պատերազմ են նյութում մեր դեմ: Չմոռանալ, վոր յերկրի ներսում թաքնված թշնամական ուժերի թափթփուկները դիմում են բոլոր տեսակի մեքենայությունների՝ սոցիալիզմի հաղթարշավը խանգարելու համար: Չմոռանալ, վոր թշնամիների մեքենայությունները հայտնաբերելու ամենագլխավոր նախապայմանը քաղաքա-

կան ղեկավարությունն է, որը հանդիսանում է յուրաքանչյուր կուսակցական և անկուսակցական բոլշևիկի ամենագլխավոր հատկանիշը: Սակայն բոլշևիկյան ղեկավարություն հնարավոր չէ ձեռք բերել առանց մարքսիզմ-լենինիզմի հիմունքների տիրապետման, առանց «Համ. Կ(բ)Կ պատմության համառոտ դասընթացի» խորապես յուրացման:



Խորհրդային աշխատավորությունն իր հայր, ուսուցիչ Ստալինի շուրջը համախմբված, սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու հոյակապ խնդիրներն է լուծում: Խորհրդային ժողովրդի կուռ համախմբվածությունն իր մայր կուսակցության շուրջը, ցայտուն արտահայտություն գտավ տեղական խորհուրդների ընտրություններին՝ կոմունիստների և անկուսակցականների Ստալինյան բլոկի հաղթանակի մեջ: Ժողովրդի այդ միասնությունը յերաշխիք է հանդիսանում, որ կոմունիստական անդասակարգ հասարակություն կառուցելու լենինյան-ստալինյան գաղափարները լիակատար հաղթանակով կպսակվեն:



# ԻՆՉ ԿԱՐԴԱԼ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ՄԱՍԻՆ

1. ՍՏԱԼԻՆ—«Լենինի մասին», հայերեն և ռուսերեն առանձին բրոշյուրով, կամ ԼԵՆԻՆ— ընտիր յերկեր. յերկհատորակի I-ի հ. եջ՝ 5–45 (ռուսերենը եջ՝ 6–35):
2. ՍՏԱԼԻՆ— «Լենինիզմի հիմունքների մասին». հայերեն հրատարակություն, առանձին բրոշյուրով, կամ «Լենինիզմի հարցեր» (10-րդ հրատ.) եջ՝ 9–99, (ռուսերենը՝ 11-րդ հրատ. եջ՝ 1–77):
3. ՍՏԱԼԻՆ— «Հաշվետու զեկուցում Համ Կ(բ)Կ 18-րդ համագումարում» 2-րդ և 3-րդ մասերը:
4. ՄՈԼՈՏՈՎ— «ԽՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման յերրորդ հնգամյա պլանը» զեկուցում և յեզրափակման խոսք Համ Կ(բ)Կ 18-րդ համագումարում:
5. ԿՐՈՒՊՍԿԱՅԱ— «Հիշողություններ Լենինի մասին», առանձին գրքով (հայերեն և ռուսերեն):

6. «ՀԱՄԿ(Բ)Կ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՌՈՏ ԴԱՍԸՆԹԱՑ», էջ 474–489 (ռուսերենը էջ 337–346):
7. ՅԱՐՈՍԼԱՎՍԿԻ— «Լենինի կենսագրությունը» 1938 թ. հրատարակություն, առանձին բրոշյուրով:
8. Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ՄԱՀՎԱՆ 15-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻ ԱՌԹԻՎ (ժողովածու):
9. ՇՉԵՐԲԱԿՈՎ— «Լենինի գործը հաղթանակեց», 1939 թ. հրատարակություն, առանձին բրոշյուրով:

---



# ՖԻՆԼԱՆԴԻԱ

## (ՀԱՄԱՌՈՏ ՏԵՂԵԿԱՆՔ)

Ֆինլանդիան գտնվում է Եվրոպայի հյուսիս-արևելյան մասում, Բալթիկ ծովի Բոտնիկական ծոցից արևելք և Ֆիննական ծոցից հյուսիս: Ֆինլանդիային են պատկանում Բոտնիկական և Ֆիննական ծոցերում գտնվող բազմաթիվ մանր կղզիներ, վորոնցից ամենակարևորներն են Ալանդական կղզիները:

Ֆինլանդիան ցամաքային սահմաններ ունի Նորվեգիայի և Շվեդիայի հետ (հյուսիս-արևմուտքում): Արևելքից Ֆինլանդիան 1566 կիլոմետր յերկարությամբ (Բարենցի ծովից մինչև Ֆիննական ծոցը) սահմանակից է ԽՍՀՄ-ին: Խորհրդային-ֆինլանդական սահմանը Կարելական թերակղզում (Լադոգա լճի և Ֆիննական ծոցի միջև) Լենինգրադից հեռու չէ ընդամենը միայն 32 կիլոմետր: Ծայրագույն հյուսիսում Ռիբաչի թերակղզու շրջանում Ֆինլանդիան 50 կիլոմետր ձգվածությամբ

դուրս է գալիս դեպի հյուսիս՝ Բարենցի ծովը:

Ֆինլանդիայի տերիտորիան նրա հին սահմաններում (ներառյալ ներքին լճերի տարածությունը) կազմում էր մոտավորապես 388.000 քառակուսի կիլոմետր, բնակչությունը կազմում էր ընդամենը 3650 հազար մարդ:

Ֆինլանդիան անվանում են լճերի երկիր: Եվ իրոք, Ֆինլանդիայում կա մոտավորապես 35 հազար լիճ (երկրի ամբողջ տարածության մոտ 12 տոկոսը):

Բազմաթիվ գետերն ունեն շատ սահանքներ: Գետերից առավել նշանավորներն են Վուոկսան, որը Սայմա լիճը միացնում է Լադոգա լճին (Սայմայից ոչ հեռու Վուոկսան գոյացնում է Իմատրա հայտնի ջրվեժը), Կյումենեն (Կյումի), որը թափվում է Ֆիննական ծոցը, Կումոն, Օուլու-յոկին և Կեմին, որոնք թափվում են Բոտնիկական ծոցը, և Պաատս-յոկին, որը թափվում է Բարենցի ծովը: Ֆինլանդիայի գետերն իրենց մեջ պարունակում են մինչև 3 միլիոն ձիու ուժ էներգիայի պաշար:

Ֆինլանդիայի կլիման չափավոր-ցուրտ



է, մեղմացված Բալթիկ և Բարենցի ծովերի ազդեցությամբ: Հաճախ լինում են գիշերային սառնամանիքներ, որոնք չարիք են գյուղատնտեսության համար:

Ֆինլանդիայի բնակչությունը բաշխված է ծայրահեղորեն անհամաչափ: Հարավային մասում, որը կազմում է երկրի կեսից մի փոքր ավելին, կենտրոնացված է ամբողջ բնակչության ավելի քան 90 տոկոսը: Բնակչության հիմնական մասսան (89,4 տոկոս) ազգությամբ ֆիններ են (սուոմներ) և կարելներ (ֆիննական ժողովրդին ազգակից ժողովուրդ):

Ֆինլանդիայում գերակշռում են մանր տիպի քաղաքները, որոնք ըստ էության իրենցից ներկայացնում են գյուղական բնակավայրեր: Ֆինլանդիայի առավել խոշոր քաղաքներն են— մայրաքաղաք Հելսինկին, (նախկին Հելսինգֆորսը), որն ունի 293 հազար բնակիչ: Հելսինկին— գլխավոր ծովային նավահանգիստն է և մետալուրգիական, նավաշինական, թղթի ու ծխախոտի արդյունաբերության կենտրոնը: Իր մեծությամբ և նշանակությամբ երկրորդ քաղաքն ու նավահանգիստը Վիպուրին է (նախկին Վիբորգը) 74 հազար

բնակչությամբ, վորը գտնվում է այն տե-
ղում, վորտեղ Սայմենյան ջրանցքը միանում
է Ֆիննական ծոցին: Վիպուրին— անտառա-
յին էքսպորտի կենտրոն է: Ֆիննական և
Բոտնիական ծոցերի միացման կետում
գտնվում է Տուրկու քաղաքը (նախկին Ա-
բո), վորն իր նշանակությամբ Ֆինլան-
դիայի յերրորդ արդյունաբերական կենտ-
րոնն է (մոտավորապես 70 հազար բնա-
կիչ): Ֆինլանդիայի ներքին քաղաքներից
խոշորագույնն է Տամպերեն (նախկին
Տամմերֆորսը)— վորն ունի 75 հազար
բանկիչ, տեքստիլ և կաշվի արդյունաբե-
րության կենտրոն է: Իրենց՝ նշանակու-
թյամբ հաջորդ քաղաքներն են Վազա
(նախկին Նիկոլայստադ), Ուլու (նախկին
Ուլեաբորգ), Լախտի և Կուոպիո—բնակ-
չության թիվը կազմում է 25-32 հազար
մարդ:

Գյուղատնտեսության մեջ (ներառյալ
անտառային տնտեսությունը և ձկնորսու-
թյունը) զբաղված է բնակչության 60 տո-
կոսը, արդյունաբերության մեջ և ար-
հեստներում՝ 17 տոկոսը, առևտրի մեջ և
տրանսպորտում՝ 8 տոկոսը:

Ջնայած հողային ու կլիմայական ան-



բարենպաստ պայմաններին, Ֆինլանդիայի
բնակչության մեծամասնության հիմնական
զբաղմունքն է գյուղատնտեսությունը, վո-
րը կենտրոնացած է գերազանցապես յեր-
կրի հարավային և մանավանդ հարավ-
արևմտյան մասում: Ֆինլանդիան մանր
հողատիրության և հողօգտագործման յեր-
կիր է: Այդ, զգալի չափով արդյունքն է
հանդիսանում 1918 թվի հեղափոխության,
յերբ հեղափոխական կառավարությունը
կուլակներից ու կալվածատերերից հողեր
վերցնող մանր կապալառուներին հայտա-
րարեց իրենց կողմից մշակվող հողամա-
սերի սեփականատերեր: Բուրժուազիան
ճնշելով հեղափոխությունը, չհամարձակ-
վեց հետ խլել հողը, բայց գյուղացիներին
ստիպեց բարձր փրկագին վճարել այդ հո-
ղի համար: Սակայն այդ այսպես կոչված՝
ագրարային ռեֆորմը բնավ էլ չվոչնչաց-
րեց կալվածատիրական խոշոր հողատիրու-
թյունը: Մինչև այժմ էլ Ֆինլանդիայում
կան շատ կալվածատերեր, վորոնք ունեն
հազարավոր հեկտար հող, այն ժամանակ,
յերբ աշխատավոր գյուղացիության լայն
մասսաները տառապում են հողասակավու-
թյունից ու հողազրկությունից:

Ֆինլանդիայում հաճախ կարելի յե տեսնել այնպիսի գյուղացիների, վորոնք մշակում են մեծ գլաքարերի (սառցադաշտերի հոսանքով բերված մեծ քարերի) մակերեսը, ուր նրանք նախապես զամբյուղներով հող են փոխադրում: Հաճախ այդպիսի «հերկով» էլ սպառվում ե գյուղացու ամբողջ հողային ֆոնդը: Ֆիննական գյուղում, բացի դրանից, կա մոտավորապես 400 հազար միանգամայն հողազուրկ գյուղատնտեսական պրոլետարիատ, վորն ապրում ե բացառապես արտադնացությամբ:

Մշակվող հողի ընդհանուր տարածությունը կազմում ե (1937 թ. տվյալներով), 2,554 հազար հեկտար, կամ յերկրի ամբողջ տարածության միայն 7,1 տոկոսը: Հիմնական գյուղատնտեսական կուլտուրաներն են— տարեկանը, ցորենը, գարին, վարսակը: Սակայն իր հացահատիկը Ֆինլանդիային բնավ ել չի բավականացնում:

Ֆինլանդիայի գյուղատնտեսության ամենից ավելի կարևոր ճյուղն ե անասնապահությունը, վորի վերաբերմամբ դաշտավարությունը գրավում ե միայն ոժանդակ տեղ: Այդ մասին ե վկայում այն



փաստը, վոր Ֆինլանդիայի կուլտուրական հողերի կես մասից ավելին զբաղվում են կերաբույսերի և կերի արմատապտուղների ցանքերը: Այդ ցանքերը գերազանցում են պարենային կուլտուրաների զբաղված տարածությունից:

Անասունների գլխաքանակը Ֆինլանդիայում (1937 թ. տվյալներով), կազմում եր՝ խոշոր յեղջերավոր անասուններինը— 1,572 հազար գլուխ, վոչխարներինը— 841 հազար, խոզերինը— 346 հազար, ձիերինը— 342 հազար: Անասունների գերակշռող քանակությունը կենտրոնացած ե կալվածատերերի և կուլակների ձեռքում: Գյուղացիական շատ ընտանիքների համար կաթը հազվադեպ յերևույթ ե: Մեկ կով ունեցող գյուղացին կաթը հանձնում ե կուլակի յուղագործարանին, վորպեսզի հաց գնի և վճարի բարձր հարկերը:

Անտառները Ֆինլանդիայի գլխավոր բնական հարստությունն են, վորոնք մեծ դեր են խաղում նրա ամբողջ ժողովրդական տնտեսության մեջ:

Ամբողջ անտառապատ տարածության 25,2 միլիոն հեկտարից 10 միլիոն հեկտարը (39,8 տոկոս) պատկանում եր պետու-

թյանը, 12,8 միլիոն հեկտարը (51 տոկոս) գտնվում էր մասնավոր անձանց ձեռքում, 1,9 միլիոն հեկտարը (7,5 տոկոս) ակցիոներական ընկերությունների ձեռքում և մնացած 1,7 տոկոսը պատկանում էր յեկեղեցուն ու համայնքներին:

Ֆինլանդիայի կապիտալիստական տնտեսությունը հիմնված է գլխավորապես անտառամշակության և անտառանյութ վերամշակող արդյունաբերության վրա:

Ֆինլանդիայի ամբողջ արդյունաբերության արտադրանքի ընդհանուր արժեքը կազմում է ավելի քան 13 միլիարդ մարկ: Արտաքին առևտրի (իսկ նրա միջոցով նաև Ֆինլանդիայի ամբողջ տնտեսության) միակողմանի կախումն անտառի— թղթի արդյունաբերությունից, Ֆինլանդիայի էկոնոմիկայի բնորոշ առանձնահատկությունն է հանդիսանում: Այդ արդյունաբերության մագնատները և նրանց ֆինանսավորող յերկու խոշոր մասնավոր բանկերն եյին փաստորեն ղեկավարում Ֆինլանդիայի ամբողջ տնտեսությունը:

1937 թ. Ֆինլանդիայում կար 4248 արդյունաբերական ձեռնարկություն, նրանցում զբաղված 207,5 հազար բանվորնե-



րով, վորից 58 հազար բանվոր (1024 ձեռնարկություն) փայտամշակման արդյունաբերության մեջ և 21 հազար թղթի արդյունաբերության մեջ (207 ձեռնարկություն): Այս թվերը ցույց են տալիս անտառանյութ վերամշակող արդյունաբերության նշանակությունը Ֆինլանդիայի համար:

Արդյունաբերության մյուս ճյուղերից զարգացած են յերկաթագործական, մետաղամշակման և տեքստիլ արդյունաբերությունը: Արդյունաբերական ձեռնարկությունները կրում են մանր բնույթ:

Կարիք զգալով պարենամթերքի, վառելիքի և արդյունաբերական հումքի, Ֆինլանդիան ստիպված է ներմուծել դրանք: Ներմուծվող մթերքների համար նա վճարում է անտառային և մասամբ կաթնամթերքների արտահանումով: Դրանով են վորոշվում Ֆինլանդիայի կապերը համաշխարհային տնտեսության հետ և նրա արտաքին առևտրի բնույթը: Ֆինլանդիան 1937 թվի տվյալներով ներմուծում է ածուխ (իմպորտի 6,6 տոկոսը), բամբակ (2,5 տոկոս), բամբակե և բրդե գործվածքներ (մոտավորապես 4,1 տոկոս):

Ֆինլանդական իմպորտի մոտավորապես 20 տոկոսը կազմում են սեվ մետաղները և նրանցից պատրաստված իրերը: Էքսպորտի մեջ վճռական դեր է խաղում անտառանյութի վերամշակման արդյունաբերության արտադրանքը, վորը կազմում է ամբողջ էքսպորտի 82,6 տոկոսը (դրանից՝ տախտակեղեն— 35,3 տոկոս, փայտ— 25,0 տոկոս, ստվարաթուղթ և թուղթ— 11,9 տոկոս, փայտից պատրաստված իրեր— 10,4 տոկոս):

Ֆինլանդիայի արտաքին առևտրական գլխավոր գործակալն է հանդիսանում Անգլիան, վորին 1937 թ. բաժին էր ընկնում ֆիննական ամբողջ էքսպորտի 45,3 տոկոսը և իմպորտի 22,2 տոկոսը:

Ֆինլանդիան ունի յերկաթուղիների համեմատաբար զարգացած ցանց, վորը յերկրի խորքում ընկած շրջանները կապում է ծովափնյա նավահանգիստների հետ:

Յերկաթուղիների յերկարությունը 1939 թվին կազմում է 5964 կիլոմետր: Շարժական կազմն ունի 800 լոկոմոտիվ և 26.000 վագոն (այդ թվում 1,5 հազարը՝ մարդատար):

Ֆինլանդական բուրժուական հանրապետ-



ության բանակը կոմպլեկտավորվում էր ընդհանուր զինվորական ծառայության հիման վրա, վորը պարտադիր է արական բնակչության համար, 21 տարեկանից սկսած: Իսկական զինվորական ծառայությունն անցնելուց հետո, զինապարտը մինչև 40 տարեկան հասակը գտնվում է պահեստում: Իսկ այնուհետև նորից փոխադրվում է աշխարհազորի մեջ, վորտեղ մնում է մինչև 60 տարեկան հասակը:

Բանակի սովորեցված ռեզերվները հասնում են 300 հազար մարդու: Խաղաղ ժամանակվա բանակը (այսպես կոչված՝ «պաշտպանության կորպուսը»), իր կազմի մեջ ունի ժամանակակից զորքի բոլոր տեսակները: Ֆինլանդիան ունի վոչ-մեծ ռազմա-ծովային նավատորմ և ռազմական ավիացիա:

Բանակ կանչելու ժամանակ կատարվում էր քաղաքական-դասակարգային խտրություն: Բոլոր զորակոչվողները վստահելիական տեղեկանքների հիման վրա բաժանվում էին յերեք կատեգորիայի— «միանգամայն հուսալիներ», «հուսալիներ» և «անհուսալիներ»: Վերջին կատեգորիան առանձին տարիներին հասնում

եր բանակի կազմի 50 տոկոսին: «Անհուսալիները» բանակում գտնվում եյին սպաների ուժեղ հսկողության տակ: Հրամանատարական պաշտոններ զբաղեցնել նրանց, իհարկե, չեր թույլատրվում: Ֆինլանդական բանակի զինվորները, ինչպես և բուրժուական յերկրների բոլոր բանակների զինվորները քաղաքական իրավունքներից չեյին օգտվում: Զորանոցում Ֆիննական զինվորը յենթարկվում եր հակախորհրդային համառ մշակման:

Բայց ըստ յերեվույթին այդ «դաստիարակչական» աշխատանքը հեղափոխական տրամադրություններով «վարակված» զինվորների մեջ չի տալիս սպասվող արդյունքները: Ուստի, ի լրացումն կադրային բանակին, վորը բուրժուազիայի տեսակետից բավականաչափ «հուսալի» չե իր շահերը պաշտպանելու համար,— Ֆինլանդիայում գոյություն ունի զինված ռազմառեակցիոն կազմակերպություն— շյուցկորը կամ «պահպանական գվարդիան» (վորին, տեռորի և 1918 թվի հեղափոխության ճնշման ժամանակ ցուցաբերած ծառայությունների համար, բանվորները կնքել են «մսագործների գվարդիա» անունը):



Պաշտոնական տվյալներով, շյուցկորն իր կազմի մեջ ուներ մոտավորապես 100 հազար մարդ և կոմպլեկտավորվում եր քաղաքի ու գյուղի բուրժուական և մանր-բուրժուական տարրերից: Հիմնական կադրերը մատակարարում ե գյուղի կուլակային վերնախավը: Շյուցկորը լավ զինված ե և իր կազմի մեջ ունի զանազան տեխնիկական ու հատուկ զորքեր, ընդհուպ մինչև հեծելազորն ու հրետանին: Շյուցկորը բանակի անմիջական կցորդն ե:

Ֆիննական բանակի թվական կազմը, ըսպառազինման չափերն ու տեմպերը, բնակչության ռազմականացումը, ռազմական արդյունաբերության ձեռնարկությունների ուժեղ շինարարությունը—այս ամբողջ տենդագին ռազմական նախապատրաստությունը բացահայտորեն գերազանցում եր յերկրի պաշտպանության կարիքներից: Ակնհայտ եր, վոր Ֆիննական ծախու կառավարողները, վորոնց հրահրում եյին ամենառեակցիոն իմպերիալիստները, պատերազմի եյին պատրաստվում Խորհրդային Միության դեմ:

Իր պետական կառուցվածքով Ֆինլանդիան բուրժուական հանրապետություն եր:

Միապալատ պառլամենտը—սեյմը (կամ՝ Էդուսկունտան) բաղկացած եր 200 դեպուտատներից, վորոնք ընտրվում եյին յերեք տարի ժամանակով:

Ընտրական իրավունքներից օգտվում եր յերկու սեռի բնակչությունը, միայն սկսած 24 տարեկան հասակից: Այսպիսով, տարիքային ցենզը չափազանց սահմանափակում եր յերիտասարդության իրավունքները: Ընտրական իրավունքներից չեյին օգտվում զինվորական ծառայողները. այդ իրավունքից զրկված եյին նաև չքավորական նպաստ ստացող անձինք:

1930 թվին ընտրական օրենքի մեջ մտցըվեց հատուկ ծանոթություն, վորը ընտրական իրավունքներից զրկում եր այն անձանց, ովքեր յերբևիցե դատված են յեղել կամ կասկածվել են (թեև դատարանի կողմից արդարացված) «պետական դավաճանության մեջ»: Պետք ե հիշատակել, վոր կոմկուսակցությանը կամ հեղափոխական այլ կազմակերպության պատկանելը դիտվում եր վորպես «պետական դավաճանություն»: Քաղաքական տեռորի պայմաններում այդ կատեգորիայի տակ եյին ընկնում տասնյակ հազարավոր բանվորներ:



Ֆինլանդական պրեզիդենտն օժտված եր շատ ավելի լայն իրավունքներով, քան թե շատ բուրժուական սահմանադրական պետությունների միապետները: Նա ընտրվում եր 6 տարի ժամանակով, հատկապես ջոկված ընտրողների կողմից, վորոնք լինում եյին թվով 300 մարդ:

Պրեզիդենտն ուներ ժամանակից շուտ սեյմը ցրելու, նոր ընտրություններ նշանակելու, ներումն շնորհելու իրավունքներ: Նա կարող եր չհաստատել սեյմի ընդունած օրենքը: 1930 թվին պրեզիդենտի գերագույն իրավունքներն ե՛լ ավելի ընդլայնվեցին «հանրապետության պաշտպանության օրենքով»: Վերջինս պրեզիդենտին իրավունք եր տալիս պատերազմի ժամանակ և «տագնապալից ժամանակ» օրենքներ հրատարակել՝ սեյմից անկախ: Այդ իրավունքը լայնորեն օգտագործվեց հեղափոխական տարրերի դեմ պայքարելու համար:

Ֆինլանդական սահմանադրությունը հանդիսավոր կերպով հռչակում եր թե «յուրաքանչյուր քաղաքացու կյանքը, պատիվը, անձնական ազատությունը և գույքը պաշտպանվում ե օրենքով»: Բայց Ֆինլանդիայի ինքնուրույն գոյության բոլոր տարիները

ցույց են տալիս այդ շքեղ փրազի կեղծությունը: Այդ տարիների ընթացքում, հատկապես լապուասական շարժման սանձարձակության ժամանակ, հարյուրավոր բանվորներ սպանվեցին առանց դատի ու քննության: Բանվորական կազմակերպությունների գույքը (ակումբները, տպարանները, պրոֆմիությունների շենքերը), հրկիզվում էին, ավերվում:

Տնտեսական ճգնաժամի տարիներին բանվորների աշխատավարձն իջեցվեց 25—50 տոկոսով:

Շահագործումն ընդունեց հսկայական չափեր: Անտառային ապրանքների ցածր ինքնարժեքը, բանվորների աղքատիկ աշխատավարձի հետևանքով, առասպելական շահույթներ էին բերում ֆինլանդական անտառանյութերի եքսպորտյորներին: Կապիտալիստների շահույթներն աճում էին, միևնույն ժամանակ աշխատավորության կյանքի մակարդակն ընկնում էր: Երկրում աճում էր գործազրկությունը և աղքատությունը:



Համարյա վեց դարի ընթացքում 12-րդ դարի վերջերից մինչև 19-րդ դարի սկզբ-



ները, Ֆինլանդիան պատկանում էր Շվեդիային: Ֆրիդրիխսգամյան հաշտության պայմանագրով, որը կնքվեց ռուս-շվեդական պատերազմի հետևանքով (1809 թ.), Ֆինլանդիան մտցվեց ցարական Ռուսաստանի կազմի մեջ, ֆինլանդական ավտոնոմ Մեծ իշխանության իրավունքներով: «Ցանկանալով իր կողմը գրավել ֆինլանդացիներին, շվեդական թագավորի նախկին հպատակներին, Ալեքսանդր առաջինը վճռեց ճանաչել և հաստատել ֆինլանդական հին սահմանադրությունը» 1): Ֆինլանդիայում պահպանվեց այսպես կոչված՝ ինքնավարությունը, հատուկ օրենսդրությունը, իր դրամական սիստեմը և նույնիսկ փոչ-մեծ բանակ, բայց փաստորեն ցարական կառավարությունը չէր պահպանում Ֆինլանդիայի ավտոնոմիան: Բավական է ասել, որ Ֆինլանդիան Ռուսաստանին միակցվելուց հետո համարյա կես դարի ընթացքում սեյմը չէր գումարվում: Ցարական իշխանությունները բռնի կերպով ռուսիֆիկացիայի էին յենթարկում ֆինլանդական բնակչությունը, դպրոցներում և համալսարաններ-

1) Լենին, հատ. 4-րդ, եջ 387:

բում արգելելով ֆիննական լեզուն:

Ազգային դաժան ճնշման քաղաքականությունը հատկապես ուժեղանում է 20-րդ դարի սկզբից: Ֆինլանդական սահմանադրությունը փաստորեն բոլորովին վերացվեց: Ֆիննական զորքերն արձակվեցին (1901 թ.), պետական հիմնարկներում մտցվեց ռուսերեն լեզուն (1900 թ.):

Ռեակցիայի և 1914—1918 թ. թ. իմպերիալիստական պատերազմի տարիներին ցարիզմը Ֆինլանդիան լիովին վերածեց ռուսական կայսրության իրավազուրկ մի գավառի: Ազգային ճնշմանը միացան տնտեսական դաժան շահագործումը, քաղաքական ռեպրեսիաները, սիստեմատիկ տեռորը: 1909 թվին Ֆինլանդական գեներալ-նահանգապետ է նշանակվում հայտնի ջարդարար ու խավարամոլ գեներալ Զեյնը, իսկ 1910 թվին ցարական կառավարությունը մի օրենք է մտցնում, որի համաձայն, Լենինի արտահայտությամբ, «Ֆինլանդական սեյմը կայսրության հանդեպ իր վերաբերմունքի տեսակետից հանդեցվում է Բուլիգինյան Դումայի վիճակին» [1]:

1) Լենին, հատ. 14, էջ 271:



Ազգային ճնշման և քաղաքական իրավազրկության այդ քաղաքականությանը վերջ դրեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ հեղափոխությունը, որը հռչակեց ու կենսագործեց ժողովուրդների ինքնորոշման իրավունքը: Պետք է ընդգծել, որ 1917 թվի փետրվարյան հեղափոխությունը ինքնուրույնություն չբերեց Ֆինլանդիայի համար:

«Ցարիզմի վոչնչացումը և իշխանության գլուխ բուրժուազիայի հանդես գալը, սակայն, չհասցրեց ազգային ճնշման վոչընչացմանը: Ազգային ճնշման հին, կոպիտ ձևը, փոխարինվեց ճնշման նոր, նրբին, բայց դրա փոխարեն ավելի վտանգավոր ձևով: Լվովի-Միլյուկովի-Կերենսկու կառավարությունը վոչ միայն չհրաժարվեց ազգային ճնշման քաղաքականությունից, այլ դեռ նոր արշավանք կազմակերպեց Ֆինլանդիայի դեմ (սեյմի ցրումը 1917 թվի ամառը)...» [1]:

Միայն բոլշևիկների կուսակցությունն էր վճռականորեն ու հետևողականորեն պայքարում ազգային ճնշման բոլոր ձևերի վո-

1) Ի. Ստալին— Մարքսիզմը և ազգային-գաղութային հարցը, էջ 52, Պետքաղհրատ, 1938 թ.:

բում արգելելով ֆիննական լեզուն:

Ազգային դաժան ճնշման քաղաքականությունը հատկապես ուժեղանում է 20-րդ դարի սկզբից: Ֆինլանդական սահմանադրությունը փաստորեն բոլորովին վերացվեց: Ֆիննական զորքերն արձակվեցին (1901 թ.), պետական հիմնարկներում մտցվեց ռուսերեն լեզուն (1900 թ.):

Ռեակցիայի և 1914—1918 թ. թ. իմպերիալիստական պատերազմի տարիներին ցարիզմը Ֆինլանդիան լիովին վերածեց ռուսական կայսրության իրավազուրկ մի գավառի: Ազգային ճնշմանը միացան տնտեսական դաժան շահագործումը, քաղաքական ռեպրեսիաները, սիստեմատիկ տեռորը: 1909 թվին Ֆինլանդական գեներալ-նահանգապետ է նշանակվում հայտնի ջարդարար ու խավարամոլ գեներալ Զեյնը, իսկ 1910 թվին ցարական կառավարությունը մի օրենք է մտցնում, որի համաձայն, Լենինի արտահայտությամբ, «Ֆինլանդական սեյմը կայսրության հանդեպ իր վերաբերմունքի տեսակետից հանդեցվում է Բուլիգինյան Դումայի վիճակին»[1]):

1) Լենին, հատ. 14, էջ 271:



Ազգային ճնշման և քաղաքական իրավազրկության այդ քաղաքականությանը վերջ դրեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Հեղափոխությունը, որը հռչակեց ու կենսագործեց ժողովուրդների ինքնորոշման իրավունքը: Պետք է ընդգծել, որ 1917 թվի փետրվարյան հեղափոխությունը ինքնուրույնություն չբերեց Ֆինլանդիայի համար:

«Ցարիզմի վոչնչացումը և իշխանության գլուխ բուրժուազիայի հանդես գալը, սակայն, չհասցրեց ազգային ճնշման վոչնչացմանը: Ազգային ճնշման հին, կոպիտ ձևը, փոխարինվեց ճնշման նոր, նրբին, բայց դրա փոխարեն ավելի վտանգավոր ձևով: Լվովի-Միլյուկովի-Կերենսկու կառավարությունը վոչ միայն չհրաժարվեց ազգային ճնշման քաղաքականությունից, այլ դեռ նոր արշավանք կազմակերպեց Ֆինլանդիայի դեմ (սեյմի ցրումը 1917 թվի ամառը)...» [1]):

Միայն բոլշևիկների կուսակցությունն էր վճռականորեն ու հետևողականորեն պայքարում ազգային ճնշման բոլոր ձևերի վո-

1) Ի. Ստալին— Մարքսիզմը և ազգային-գաղութային հարցը, էջ 52, Պետհրատ, 1938 թ.:

չընչացման համար, հանդես գալով ճնշված ժողովուրդների պաշտպանությամբ: «Այժմ, —ասում էր ընկ. Ստալինը ՌՍԴԲԿ Համառուսական 7-րդ (Ապրիլյան) կոնֆերանսում ազգային հարցի մասին տված իր զեկուցման մեջ,—մեր առջև կա կոնկրետ կոնֆլիկտ ֆինլանդական ժողովրդի ու ժամանակավոր կառավարության միջև: Ֆինլանդական ժողովրդի ներկայացուցիչները, սոցիալ-դեմոկրատիայի ներկայացուցիչները ժամանակավոր կառավարությունից պահանջում են վերադարձնել ժողովրդին այն իրավունքները, վորոնցից նա օգտվում էր նախքան Ռուսաստանին միակցվելը: Ժամանակավոր կառավարությունը մերժում է այդ, ֆինլանդական ժողովրդին չճանաչելով սուվերեն: Ում կողմը պետք է մենք կանգնենք: Ակներևաբեն, ֆինլանդական ժողովրդի կողմը, վորովհետև անհնարին է ընդունել վորևէ մի ժողովրդի բռնի կաշկանդումը միասնական պետության շրջանակներում» 2):

1917 թվի դեկտեմբերի 19-ին (նոր տոմարով 1918 թ. հունվարի 1-ին) խորհրդային կառավարությունը Ֆինլանդիայի համար

2) Նույն տեղը, էջ 47:



ճանաչեց ինքնուրույն անկախ պետական գոյության լիակատար իրավունքը: «Խորհրդային Միությունն իր կամքի ազատ արտահայտությամբ ապահովեց Ֆինլանդիայի ինքնուրույն և անկախ գոյությունը: Տարակույս լինել չի կարող, վոր միայն Խորհրդային կառավարությունը, վորը ճանաչում է ազգությունների ազատ զարգացման սկզբունքը, կարող էր դիմել այդպիսի քայլի: Պետք է ասել, վոր վոչ մի կառավարություն Ռուսաստանում, բացի Խորհրդայինից, չի կարող հանդուրժել անկախ Ֆինլանդիայի գոյությունը հենց ճիշտ Լենինգրադի դարպասների մոտ» 1):

Հոկտեմբերյան հեղափոխությունը մեծագույն հեղափոխական վերելք առաջացրեց ֆիննական բանվորների մեջ: Ստեղծվեց այնպիսի իրադրություն, վորը նպաստավոր էր պրոլետարիատի կողմից իշխանությունը գրավելու համար: Սակայն ֆինլանդական սոցիալ-դեմոկրատիայի և ռեֆորմիստական

1) Վ. Մ. Մոլոտով—Խորհրդային Միության արտաքին քաղաքականության մասին: Զեկուցում ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի նիստում, 1939 թվի հոկտեմբերի 31-ին:

պրոֆմիությունների դավաճանական քաղաքականության շնորհիվ, բուրժուազիային հաջողվեց պահպանել իր տիրապետությունը:

1918 թվի հունվարի 28-ին Հելսինգֆորսում ստեղծվեց հեղափոխական կառավարություն-ժողովրդական լիազորների խորհուրդ:

Սկսվեց քաղաքացիական պատերազմը: Ֆիննական բուրժուազիան տարբերկրյա ավինների օգնությամբ հաղթեց այդ դասակարգային կռվում: Հաղթանակած հակահեղափոխությունը դաժանորեն դատաստան տեսավ բանվոր դասակարգի նկատմամբ: Ֆինլանդական բուրժուազիայի ավխատակ տեռորը շատ առաջ անցավ Փարիզյան կոմունարների նկատմամբ կատարված արյունահեղ դատաստանից:

Միայն 1918 թվին, բնավ եւ վոչ լրիվ տվյալներով խոշտանգվեցին և գնդակահարվեցին 15,817 մարդ: Մոտ 90 հազար մարդ (այսինքն՝ ամբողջ բնակչության մոտավորապես 3 տոկոսը), գցվեցին բանտերն ու համակենտրոնացման ճամբարները: «Արտակարգ դատարանները». հեղափոխության պարտությունից հետո, չորս ամսվա



ընթացքում 67,788 մարդու դատապարտեցին զանազան ժամկետներով տաժանակիր աշխատանքների, ընդհանուր առմամբ 300 հազար տարով:

Ֆինլանդիայի բոլոր կառավարությունների ներքին քաղաքականության գլխավոր խնդիրն է յեղել «կոմունիզմն արմատախիլ անելը» և բանվորական շարժման ջախջախումը տեռորի ու անլուր ռեպրեսախաների միջոցով:

Արտաքին քաղաքականության բնագավառում բոլոր կառավարությունները (այդ ժամանակվա ընթացքում փոխվել է ավելի քան 20 կաբինետ), ներառյալ Տանների սոցիալ-դեմոկրատական կառավարությունը (1926 թ. դեկտեմբերից մինչև 1927 թ. դեկտեմբեր), մշտապես վարում եյին ԽՍՀՄ-ի վերաբերմամբ բացահայտ կամ քողարկված թշնամական քաղաքականություն:

Ֆինլանդիայի կառավարող շրջանները— տարբերկրյա իմպերիալիստների այդ գործակալությունը— ակտիվ մասնակցում եյին խորհրդային յերկրի դեմ Անտանտայի կազմակերպած արշավանքներին:

1919—1920 թվականներին, դավաճանելով

էր ժողովրդի ազգային շահերը, ֆինլանդական ռեակցիոն բուրժուազիան պաշտպանում էր ռուսական հակահեղափոխությունը, որը հանդես էր գալիս «միասնական անբաժանելի ռուսաստանի» լոզունգով: 1920 թվին մտնելով Ազգերի լիգայի մեջ, Ֆինլանդիան, կատարելով իր թիկունքում կանգնած օտարերկրյա իմպերիալիստների առաջադրանքները, ԽՍՀՄ-ի դեմ ուղղված պայքարի ակտիվ նախաձեռնողներից մեկն էր:

1919 թվի գարնանը սպիտակ ֆինները ներխուժեցին Խորհրդային Կարելիա: Նույն թվի աշնանը նրանք մասնակցում էին Պետրոգրադի դեմ Յուդենիչի հարձակմանը: Նույնիսկ այն բանից հետո, երբ ԽՍՀՄ-ի ու Ֆինլանդիայի միջև 1920 թվի հոկտեմբերի 14-ին հաշտության պայմանագիր ստորագրվեց Յուրևում, շյուցկորականների կամավորական խմբերը, ֆիննական սպաների հրամանատարությամբ և անգլիական իմպերիալիստների աջակցությամբ, 1921—1922 թվականներին նոր արշավանք ձեռնարկեցին դեպի Խորհրդային Կարելիա: Հենց այդ տարիներին ծնունդ առավ զառանցական գաղափարը «Մեծ Ֆինլանդիա-



յի» մասին՝ Բալթիկ ծովից մինչև... Ուրալ, մի գաղափար, որը մինչև այժմ էլ գտնում է իր փութաջան հետևորդները հատկապես ֆիննական անտառարդյունաբերողների ու թղթի գործարանատերերի մեջ, որոնք երազում են Խորհրդային Հյուսիսի անտառային հարստությունների մասին:

Նույն այդ ադրեսով հակախորհրդային նպատակներով ֆինլանդական ավանտյուրիստները, հակառակ խորհրդային Միության բողոքին, սպառնում էին Շվեդիայի հետ միասին ձեռնարկել ամրությունների կառուցմանն Ալանդական կղզիներում:

«Նման վոճրագործ արարքների մի ամբողջ սերիա ունեն իրենց խղճի վրա ծանրացած՝ Ֆինլանդիայի կապիտալիստական պարագլուխները:

Ավելի քան 21 տարվա ընթացքում մեր երկիրը (Ֆինլանդիան— ծանոթություն խմբագրությանն է), ինչպես վոր պանական Լեհաստանը, հակախորհրդային ինտրիգաների մի բույն էր, վորտեղ մինիստրներն ու շտաբային սպաները, շվեդական բանկիրների, մեծ տերությունների իմպերիալիստների ու ամեն տեսակ հակախորհրդային ավանտյուրիստների հետ միասին, պա-

ահրազմական դավեր էյին նյութում ԽՍՀՄ-ի դեմ: Նյութում էյին դրանք այնքան ժամանակ, մինչև վոր հենց իրենք խճճվեցին իրենց ցանցերի մեջ»[1]:

Խորհրդային Միությունը միշտ կողմնակից է յեղել և կողմնակից է բոլոր մանր ժողովուրդներին ոգնություն ցույց տալուն, ժողովուրդներ, վորոնք կարող են դառնալ ագրեսսիայի զոհ և, վորոնք պայքարում են հանուն իրենց ազատության ու անկախության:

Խորհրդային-Ֆինլանդական բանակցությունները, վորոնք վերաբերվում էյին յերկու կողմերի համար էլ կենսական նշանակություն ունեցող հարցերին— Ֆիննական ծոցի անվտանգության հարցերին—վիժեցին Ֆինլանդիայի հանցանքով: Թվում է, վոր ԽՍՀՄ-ի առաջարկը Ֆիննական ծոցի հյուսիսային մուտքի մոտ խորհրդային նավատորմի համար ռազմա-ծովային բազա ընտեղծելու մասին, համապատասխանում էր վոչ միայն ԽՍՀՄ-ի հարազատ շահերին,

---

1) «Ֆինլանդիայի Կոմկուսակցության Կենտկոմի դիմումից՝ ուղղված Ֆինլանդիայի աշխատավոր ժողովրդին»:



այլև հենց Ֆինլանդիայի: Չէ՞ վոր հենց այդտեղից կարող է ամեն մի րոպե սպառնալիք ծագել Ֆինլանդիայի անվտանգությանը՝ յերրորդ պետությունների կողմից: Յեվ այնուամենայնիվ, հակառակ առողջ դատողությանը, Ֆինլանդիայի կառավարող շրջանները շարունակում էյին վարել պրովակացիոն հակախորհրդային քաղաքականություն, զորքեր կենտրոնացնելով խորհրդային-Ֆինլանդական սահմանի վրա, ընդհարման պատրաստվելով ԽՍՀՄ-ի դեմ:

Ֆինլանդական «Սոյխտու» ժուռնալը բաց է իբաց գրում էր, վոր Ֆինլանդիայում մղվող հակախորհրդային պրոպագանդան ղեկավարում է Լոնդոնը: Մինչդեռ «Խորհրդային Միությունն այժմ վոչնչով չի սպառնում մեր անկախությանը, այնպես, ինչպես վոր նա յերբեք էլ չի սպառնացել դրան, մի բան, վոր և պետք էր սպասել սոցիալիզմի յերկրից, վորն առաջ էլ միշտ հարգել է փոքր ժողովուրդների շահերը»: Ժուռնալն այնուհետև ընդգծում էր, վոր այժմ Ֆինլանդիայի համար ամենամեծ վըտանգ է ներկայացնում արեվմտյան իմպերիալիզմի ձգտումը՝ Ֆինլանդիան ոգտա-

դարձել վերջինս իր քաղաքականության զենք։

Վորպեսզի պատկերացնենք, թե ում շահերն եր պաշտպանում բուրժուական ֆինլանդիայի կառավարողների՝ ներկայումս փախած շայկան, անհրաժեշտ է վորոշ տվյալներ բերել նրա մի քանի մասնակիցների մասին։

Նախկին վարչապետ, պրոֆեսոր Կայանդերը— ակցիոներական ընկերության ղեկավարն եր և Ֆինլանդիայի խոշորագույն անտառաարդյունաբերողներից մեկը։

Երկկո Ելիասը— արտաքին գործերի այդ վայ—մարտական մինիստրը—ամենախոշոր լրագրի տերն է, սերտորեն կապված է առեվտրական ու ֆինանսական շրջանների հետ, մի շարք ակցիոներական ընկերությունների վարչությունների անդամ է։

Ֆինանսների նախկին մինիստր, մեկ որով վարչապետ, այժմ, արտաքին գործերի մինիստրի դերում ծամածություններ անող սոցիալ—դեմոկրատ Տանները, խոշորագույն կալվածատերերից մեկն է (ունի 30 հազար հեկտար հող), նրան է պատկանում խոշոր կոոպերատիվի ակցիաների մեծամասնությունը, նա մի շարք ակցիոներական ընկե-



րությունների վարչությունների անդամ է։

Ֆիննական ռազմամոլների փաստական ղեկավարն է հանդիսանում ֆիննական ժողովրդի դահիճ Մաններհայմը։ Ցարական բանակի այդ գեներալը 1917 թվի Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո փախավ Ֆինլանդիա և հանդիսանում է Խորհրդային Միության վոխերիմ թշնամին։ Այդ նա արյան մեջ խեղդեց ֆիննական հեղափոխությունը և վոչնչացրեց ֆիննական բանվորների մոտավորապես կես մասը։

Խոշոր բուրժուաները, կալվածատերերն ու գեներալները— ահա՛ թե ովքեր եյին կառավարում Ֆինլանդիան, խեղդում ֆիննական բանվորներին ու գյուղացիներին վոչ պակաս դաժանությամբ, քան ցարական կառավարությունը։ Ահա՛ թե ովքեր եյին ըստ եյության վիժեցնում խաղաղ հարաբերությունները խորհրդային յերկրի հետ, ահա՛ թե ովքեր եյին վաճառում և այժմ էլ վաճառում են ֆիննական ժողովրդի շահերը։

«Բայց ֆինլանդական ժողովրդի լայն մասսաները չեն ուզում զոհաբերել իրենց կյանքը հանուն Մաններհայմների ու պատերազմի այլ պրովոկատորների։ Ֆինլանդիայի ժողովրդական մասսաները, վորոնց հա-

մար թանգ է իրենց յերկրի ինքնուրույնու-
թյունը, գիտեն, վոր այդ ինքնուրույնու-
թյունն ապահովելու և ամրապնդելու միակ
ուղին բարեկամական համագործակցու-
թյունն է մեծ Խորհրդային Միության
հետ»։1)։

Դեկտեմբերի 1-ին Տերիոկի քաղաքում, մի շարք ձախ կուսակցությունների և ֆիննական ապստամբած զինվորների ներկայացուցիչների համաձայնությամբ, կազմվեց Ֆինլանդիայի նոր կառավարություն— ֆինլանդական Դեմոկրատական Հանրապետության Ժողովրդական Կառավարությունը։ Ժողովրդական կառավարության կազմի մեջ մտան՝ Օտտո Կուուսինենը— կառավարության նախագահ և արտաքին գործերի մինիստր, Մաուրի Ռոզենբերգը— ֆինանսների մինիստր, Ակսել Անտիլան— պաշտպանության մինիստր, Տուուրե Լեհենը— ներքին գործերի մինիստր, Արմաս Եյկիյան— հողագործության մինիստր, Ինկերի Լեհտինենը—լուսավորության մինիստր, Պաավո

1) «Ֆինլանդիայի Կոմկուսակցության Կենտկոմի դիմումից՝ ուղղված Ֆինլանդիայի աշխատավոր ժողովրդին»։



Պրոկկոնենը— Կարելիայի գործերի մինիստր։

Ժողովրդական Կառավարությունը դեկտեմբերի 1-ին դեկլարացիա հրապարակեց, շարադրելով իր ծրագիրը։ Ֆինլանդական Դեմոկրատական Հանրապետության Կառավարությունն իր ամբողջ ժողովրդին կոչ արեց Կարմիր բանակի հետ միասին պայքարել ընդդեմ պատերազմի հրձիգների և ֆիննական ժողովրդին կեղեքողների։

Դեկտեմբերի 2-ին Խորհրդային Միության և Ֆինլանդական Դեմոկրատական Հանրապետության միջև կնքվեց փոխադարձ օգնության ու բարեկամության պայմանագիր։

Բարեկամության ու փոխադարձ օգնության պայմանագրի կնքումը ԽՍՀՄ-ի և Ֆինլանդական Դեմոկրատական Հանրապետության Ժողովրդական Կառավարության միջև այժմ ընդմիշտ ֆիննական ժողովրդի համար կապահովի խաղաղ աշխատանքն ու պետական անկախությունը։

Ֆինլանդիայի աշխատավորները Խորհրդային Միության ժողովրդների սերտ բարեկամությամբ այժմ իրենք կկառուցեն իրենց ազատ ու յերջանիկ կյանքը։

Պատ. խմբագիր՝ Ս. ՂԵՎՈՆԴՅԱՆ

Սրբագրիչ՝ ՀԱՐ. ՓԱՐԻԿՅԱՆ
Գլավլիտի լիազոր Ջ—1036
Պատ. № 10. Տիրաժ 5303

*Հանձնված է արտադրության* 5/I 1940 *թ.*
*Ստորագրված է տպագրության* 16/I 1940 *թ.*

Հայկական ԽՍՀ ԺԿԽ-ին կից «Խ. Հ.» հրատարակչության տպարան, Երևան